# ՀԱՅԿԱԿԱՆ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆԸ

Պատասխան մը Պոլսոյ *Միլլէթ* պարբերականին (տե՛ս *Յառաջ* 10 Մայիս)։

*Դուք, Ճինկիզխանի եւ Լէնկթիմուրի ցեղակից Թուրքերդ, բաւական վարպետ էք յերիւրածոյ եւ մտացածին դէպքեր չինելու եւ ջարդի պատմութիւններ վերագրելու Ռուսերուն ։*

*Ջարդն ու աւարառութիւնը*, զուլումն ու *հարստահարութիւնը Սուլթաններր ստեղծեցին, Իթթիհատը կատարելագործեց եւ Թուրք ցեղին մասնագիտութիւնը մնաց։ Թուրքը Հայու արիւնը իր երկու ափովը խմեց։ (Ականատես եղած ենք)։*

*Բայց, ինչո՞ւ ջարդի պատմութիւններ վերագրել Ռուսին։ Եւ նախ, ի՛նչ էր այն անկախութիւնը, զոր հետապնդած է Հայը։*

*Այսօր, համաշխարհային պատերազմէն վերջ, երբ աշխարհի հզօրներն անգամ իրարմէ կախում ունին,* անկախութեան գաղափարը էր, է, եւ կը մնայ յարաբերական։ *Զարմանալի չէ, եթէ անկախութեան ըմբռնումն ալ անհատէ անհատ տարբերի ։*

*Իսկ, անցեալ դարու վերջին քառորդէն սկսեալ, Հայերու ըղձացած ու երազած անկախութիւնը ուրիշ բան չէր, բայց եթէ, ապրիլ մարդու պէս, ԿԵԱՆՔԻ, ԻՆՉՔԻ ԵՒ ՊԱՏՈՒԻ ԱՊԱՀՈՎՈՒԹԵԱՄԲ ։*

*Հայը, Թուրքերու եւ Թաթարներու ամենազօր գերիշխանութեանը տակ, այս մարդկային ամենապարզ իրաւունքներէն զրկուած էր, Հայը՝ որ մշակոյթով իր շրջանակին մէջ գերազանցապէս բարձր էր, ոչխար մը չէր եւ իրաւունք ունէր հաւասարէ հաւասար իրաւունքներ վայելելու դրկից այն ցեղերուն հետ, որոնք նպաստաւորուած էին սուր ու զէնք գործածելու եւ իրենց ամենապարզ քմահաճոյքին առարկան դարձնելու* անզէն *Հայը, ռայան, որ կը հետապնդուէր, եթէ խռհանոցի դանակ մը ունենար ։*

*Հայը կը չահէր, կը տառէր՝ ու շրջանի* տէրէպէյին *կուղար կիսել անոր արիւն — քրտինքով ձեռք բերած արդիւնքը։ Հայը իր կեանքին տէրը չէր։ Հայուն կինը, աղջիկը անպատուըուած էին։ Հայուն հարսանեկան առագաստն անգամ իր սըրբութիւնն ու նուիրականութիւնը կորսնցուցած էր։ Հայուն կրօնական զգացումներըվիրաւորուածէին։ Ամէն կողմ սրբապղծուած սրբավայրեր, ցցահան, նախատուած եկեղեցիի պաշտօնեաներ։ Կաթողիկոսը՝ սարուկ ու կաթողիկոսարանը ապօրէն տուրքերու եւ ծանրածանր վաշխերու բեռան տակ կքած...*

*Ա՛յսպէս կ՚ապրէր Հայը աղաներու եւ փաշաներու, խաներու եւ տէրէպէյներու ամենազօր գերիշխանութեանը տակ —* զուլո՛ւմ *անպատում։*

×

*Ըմբոստութիւնը մարդկային է։ Ու անզէն Հայը երազեց ազատութիւնը, զինուեցաւ ու ըմբոստացաւ։ Զարկաւ ու զարկուեցաւ։ Անհաւասար ու զարհուրելի եղաւ պայքարը եւ անչափելի իր զոհողութիւններուն եւ զոհաբերութիւններուն չափը ։ Մինակ էր եւ մեկուսացած, հարկաւ իր աչքերը ուղղեց հեռաւոր լոյսի չամանդաղի մը — դէպի կրօնակից Եւրոպան ու մանաւանդ հիւսիսի ամենազօր ցարը։*

*Հայը սխալա՞ծ էր։*

*Ո՛չ, հազար անգամ ո՛չ։*

*Սկսեալ Իսրայէլ Օրիէն, մինչեւ Ներսէս Աշտարակեցին ու մինչեւ Լոռիս Մելիքով ու Տէր-Ղուկասով, Հայերն էին, որ ցարին զինուորները առաջնորդեցին մինչեւ Արաքսի ափերը, մինչեւ Կարին եւ Երզնկա։*

*Ճիշդ է, որ ցարերը դրժեցին իրենց խոստումը ու Հայուն զլացուեցաւ ներքին ինքնավարութիւնը (ոչ թէ անկախութիւն), բայց Ռուսիոյ գերիշխանութեան տակ ապրող Հայոց վիճակը չա՛տ աւելի տանելի ու մարդկային էր, քան Թրքահայոց կացութիւնը։ Ռուսահայը շունչ առաւ ու տիրացաւ տնտեսական բարդաւաճ վիճակներու, մինչ Թուրքիոյ մէջ Հայը միշտ կը ճնշուէր—պարբերական ջարդեր ու թալաններ ու դեռ այսօր՝ ունեւորութեան տուրքը ։*

*Անկախ է ազդ մը, որ իր սեփական լեզուն ու մշակոյթն ունի եւ հաւասար իրաւունքներ կը վայելէ դրացի ազգերու հետ։ Ահա ներկայ Հայաստանի իրական վիճակը, ՈՐ ԲՆԱԿԱՆ ՀԵՏԵՒԱՆՔՆ Է ՀԱՅՈՒՆ ՀԵՏԵՒԱԾ ԴԱՐԱՒՈՐ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԵԱՆ։ Ապրի՛լ ու անոր համար տոկալ։ Ճիշդ է, Հայը չա՛տ տառապած է ու չա՛տ ջարդուած, բայց ան կայ այսօր, ոտքի է եւ ոչ միայն ՀԱՅԸ ԿԱՅ, այլեւ՝ պատկառանք կ՚ազդէ, չարերու...։ Վասնզի հիմա այլեւս մինակ չէ ։*

*Հայը, պատմական ամենահին շրջաններէ սկսեալ, անկախ, հզօր պետութիւն մը գրեթէ չէ եղած, բայց, օժտուած չնաշխարհիկ կենսունակութիւնով մը, իր դարաւոր կեանքի ընթացքին տեսած է բազմաթիւ հզօրներու անկումը ։*

*Սարդանապաղ, Կիւրոս, Դարեհ, Մեծն Աղեքսանդր, Հռոմի, Բիւզանդիոնի, Արաբ խալիֆաներու աշխարհասասան աշխարհակալութիւնները ու վերջապէս մեր օրերու Օսմ. պետութիւնը՝ տարածուած Վիէննայէն Պարսից ծոց ու Խրիմէն-Եթովպիա ...։*

ՆԱՄԱԿՆԵՐ ԼԻԲԱՆԱՆԷՆ

## Ապրիլ 24ի Սգատօնը.— Համակրանք Յ. Օշականի

*Այս տարի բովանդակ գաղութը ապրեցաւ Եղեռնապատումի տարեդարձի տօնակատարութիւնը։ Կազմակերպուեցան շատ մը սգահանդէսներ, սկսեալ Անթիլիասի Մայր Տաճարէն մինչեւ հայկական հիւղաւանները, եւ ամէն Հայ այս տարի զգաց թէ ապրիլ 24ը համազգային, սուգի այս թուականը, կը պատկանի բոլորին, ու ամէնուն պարտականութիւնն է տալ առաւելագոյն յարգանքը նահատակներու յիշատակին ։*

*Դժբախտաբար հոս եւս գտնուեցան պղտոր միտքեր, որոնք ուզեցին արատաւորել Դաշնակցութեան անունը ։*

× *Մայիս 4, շաբաթ երեկոյ, «Համազգային ընկերութիւնը կազմակերպած էր համակրանքի երեկոյ մը, նուիրուած մեծանուն գրագէտ Յակոբ Օշականի։*

*Հալէպ տուաւ իր տուրքը, կազմակերպելով աննախընթաց համակրանքի երեկոյ մը քաղաքին մեծագոյն սրահներէն Մէմօրիըլ Հօլի մէջ, մեծ բազմութեամբ։ Բուն յոբելեանը յետաձգուած է աշնան։ Օրուան նախագահը, ընկ. Գառնիկ Գիւզալեան, իր բացման խօսքին մէջ բացատրեց թէ ունինք երկու հայրենիք,— Ա. այն որ մեր Հայաստանն է. եւ Բ. այն որ մեր հոգեկան հայրենիքն է, գաղթահայ գրականութիւնը, որուն կը ծառայէ Յակոբ Օշական, աւելի քան 40 տարիէ ի վեր։*

*Օշական ուսուցիչի եւ քննադատի մասին խօսեցաւ ընկեր Մուշեղ Ճէնտէրէճեան (Մ. Իշխան), իր աշակերտներէն, իսկ գրագէտի մասին՝ ընկեր Կարօ Սասունի։ Երկուքն ալ չէշտեցին թէ գաղթաշխարհը պարտաւոր է իր արժանի գնահատանքը տալու այս մարդուն, որ ճանչցաւ միայն մէկ ճշմարտութիւն, եւ ապրեցաւ անով,— Հայ Գրականութիւնը։ Հայ գաւառէն բոլիկ քաղաք եկաւ այս պատանին, այսօր դարձաւ ոստաններու համակրանքի առարկան ։*

*Մասնաւոր գնահատանքի ու ջերմ ծափերու արժանացաւ նուագի մասը։ Քոյր եւ եղբայր Խանճեաններ տուին հայկական պարերու շարք մը, ընկերակցութեամբ դաշնակի եւ ջութակի, խոր տպաւորութիւն գործելով ։*

*Եւ ահա տեղատարափ ծափերու մէջ խօսք կ՚առնէ Օշական։ Մեղմ, հեզասահ գետ մըն է որ կը խօսի, կը բարբառի։ Չէք տեսներ այն միւս Օշականը, խարազանող, հուժկու, անզիջող։ Այլ տարիներու բեռան տակ, արուեստի ծանրութենէն յոգնաբեկ Օշական մը։ Բառերը կշռոյթով, ու հատիկ հատիկ, ու շատ կամաց։ Ամէն մարդ ականջ կտրած եւ շունչը բռնած, չուզեր բառ մը փախցնել անոր բերնէն։ Իր շնորհակալութեան խօսքը ունի Հայ ժողովուրդին, որ այսպէս եկած է արժանաւորելու զինքը Արիւններու եւ արցունքներու «Մնացորդաց» մըն ալ ինք, պարտականութիւն ունի իր ուսերուն, իր իսկ խոստովանութեամբ, շարունակելու ինչ որ կտակեցին իրեն իր երէց եղբայրները, որոնք ոչ եւս են։ Եւ, ինչո՞ւ չէ, ունեցած է նաեւ իր մխիթարանքը։ Իր տարիներու աշխատանքը պտղաւորուած է, ու ահա այսօր իր իսկ աշակերտն է որ դողով համակուած կուզար դըրուատել իր ուսուցիչը ։*

*Հոս ալ լկտի պայքար մը։ «Յառաջդիմական» կոչուած փողոցային մամուլը* Իշխան *կոչեց այս մեծագոյն գրագէտը, որ համարձակութիւնը ունեցած էր քննադատելու Հայաստանի կարգ մը գրական դէմքերը։ Եւ յետոյ՝ ի՛նչ կ՚ուզէք որընեն, ստորնագոյնը,— նամակ մը խմբագրուած ու ստորագրուած այս անորակելի թշուառականներէն, ուղղուած Երուսաղէմի Պատրիարքին, որպէսզի դուրս նետէ զայն վանքէն, անարժան գտնելով զայն իբրեւ ուսուցիչ Ժառանգաւորաց վարժարանին ...*

*Մեկնութիւններր աւելորդ են։— ԹՂԹԱԿԻՑ*

*Դէպի Թուրա՞ն ...*

*— Սպասեցէք, յաւակնութիւնր չունինք ձեզի խորհուրդ տալու, բան մը, որ չա՛տ ուշ է արդէն։ Եթէ Հայը ջարդելու եւ հարստահարելու տեղ, արժանի չափով գնահատէիք զայն, եթէ գիտնայիք շահիլ անոր համակրանքը, բարեկամութիւնն ու ծառայութիւնը, կրնար ճամբան բաց մնալ։*

*Զափազանց միակողմանի եղաք ստորագնահատելով եւ արհամարհելով Հայը։*

*Դուք երազեցիք ջարդել ու ցրուել Հայը։ Իսկ Հայը կ՚ուզէր ապրիլ ու կ՚ապրի այսօր։ Ասոր համար է որ ակռայ կը կճրտէք մեզի ։*

*ՀԱՅԱՍՏԱՆԸ ԿԱՅ ԱՅՍՕՐ ։*

*Խ. Ն. ՀԱԼԱՃԵԱՆ*

*ՍՏԱՑԱՆՔ*

*ՀԱՅԿԱԿԱՆ ԺԱՄ*, Հրատարակութիւն Հայկական Ռատիօժամի, *Ա. հատոր* 1943, *Բ. հատոր* 1945։ *Նիւ Եորք, խիստ շահեկան, որուն մէջ ամփոփուած են* 1943—45*ին ամերիկեան անթէլի վրայ ձայնարձակուած բոլոր նիւթերը,—հայերէն ճառ,*

## Հայկական գաղութը հաւատարիմ Ֆրանսայի

*ԽՄԲ.—* Մարսէյլի մեր ընկերվարական պաշտօնակիցը, **L'Espoir,** Մայիս **19**ի թիւին մէջ հրատարակած է հայանպաստ գրութիւն մը, այս խորագրին տակ, եւ **Marius Bogi** ստորագրութեամբ ։ Մեր բարեկամը առաջին անգամ չէ որ այսճան ջերմօրէն կ՚արտայայտուի.—

*Աւելի երկար չեմ կրնար դիմադրել մեր թերթին մէջ գրելու ցանկութեանս ի նպաստ մեծ եւ ազնիւ հայկական գաղութի մասին։ Կ՚ուզէի որ բոլորն իմանային մեր հայ ընկերներուն ինծի ըրած խոստովանութիւնները։ Այն ատեն ամէն մարդ կրնար հասկնալ թէ Հայոց պատմութիւնը Ֆրանսականին պէս շինուած է զոհողութեամբ, վշտով, արիւնով, եւ գաղափարական պայքարով, որոնք երբեք դադար չեն առած։*

*Երբ կը ծանօթանանք այս ժողովուրդին քաջութեանը, հայրենասիրութեանը, ազդ մը որ հըպարտ է իր պզտիկ հայրենիքով եւ որ այնքան մեծ եւ սքանչելի մարդիկ ունէր, որոնք ստիպուեցան լքել ամէն ինչ ճնշումի եւ հալածանքի տակ, մենք հաւատարմօրէն կը խոնարհինք անոնց ճակատագրին առջեւ ։*

*Աւելի քան 25 տարի առաջ մեր հայրենիքը լայն կը բանար իր դռները բոլոր ճնշուածներուն առջեւ որոնք ապաստան կը փնտռէին ժողովրդավար երկիրներուն մէջ։ Ահա այս այրերը, կիները եւ երիտասարդներն են որ հազարներով տարածուած են մեր երկրին մէջ, աշխատելու խաղաղութեամբ եւ հանդարտութեամբ։*

*Ահա այս մարդիկն են որ մեր քարոզչական պտոյտներու ատեն ճանչցանք, հարցաքննեցինք եւ որոնց լեզուն միեւնոյնն էր,— «Ֆրանսան մեզի համար ապրելու երջանկութիւնն է, կեանքն է, արդարութիւնն է, կատարեալ ազատութիւնն է»։*

*Ի՜նչ բառեր, ի՜նչ նախադասութիւններ այրերու, կիներու, երիտասարդներու բերնին մէջ, որոնք 25 տարիէ ի վեր կը սպասեն որ մեր երկիրը զիրենք ճանչնայ եւ ընդունի Ֆրանսական հասարակութեան մէջ։*

*Իրենց նոր հայրենիքին փարած ըլլալով հանդերձ, անոնք կը մնան հայրենազուրկ եւ իրաւամբ հարց կուտան իրենք իրենց անձկութեամբ թէ Ֆրանսան ե՞րբ պիտի ճանչնայզիրենք իբրեւ որդեգիր զաւակ։ Մենք դուլ ու դադար պիտի չունենանք այս թերթին մէջ, մինչեւ որ անոնց արդար տրտունջը նկատի առնուի ։*

*Մենք առանց յուզումի չէ որ կը մտածենք այն երիտասարդներուն մասին որ աշխատեցան եւ մեծցան իրենց Ֆրանսացի ընկերներուն հետ, դըպրոցական միեւնոյն սեղաններուն առջեւ, որոնք աւելի ուշ իրարու հանդիպեցան միեւնոյն համազգեստին տակ, պատերազմի միեւնոյն դաշտին վրայ, միեւնոյն տառապանքը եւ միեւնոյն վտանգները կրելով եւ միեւնոյն զոհողութիւններն ընելով ։ Անոնք իրարու հանդիպեցան թերեւս աւելի հեռուն ալ, Հռենոսէն անդին, փշաթելերուն ետին, ուր արմուկ արմուկի մնացին հինգ երկար տարիներ։ Դաշնակից բանակներու կողմէ միասին ազատուեցան եւ միասին վերադարձի ճամբան բռնեցին։ Իրարմէ բաժնուեցան երբ Ֆրանսայի հողին վրայ հասան իրենց սիրտերը ուռած, աչքերը արցունքով, սրտով եւ հոգիով յաւիտենապէս բաժնուած։ Մէկը գտաւ իր հայրենիքը, իր ծնողքը։ Միւսը գտաւ իր ծնողքր բայց մնաց հայրենազուրկ։ Այսպէս անոնք իրարմէ բաժնուեցան մինչեւ իսկ Ֆրանսական հասարակութեան մէջ ։*

*Ուրիշ հայ ընկերներ ենթարկուեցան նացիներու տարագրութեան օրէնքներուն, Գերմանիոյ մէջ պարտադիր աշխատանքի տարուեցան։ Անոնք ալ վերադարձան այն երկիրը որ մերն է եւ ոչ թէ իրենցը։*

*Ուրիշներ միացան «մաքի»ներուն, Դիմադրական Ճակատին մէջ զինուորագրուեցան, ազատութեան պայքարին մասնակցեցան։ Պէտք էր որ Ֆրանսացի ազգին երախտագիտութեան արժանանային։ Ուրիշներ մեռան պատնէշներուն վրայ, փողոցին մէջ։ Մեռան հպարտութեամբ ծառայած ըլլալով մեծ երկրի մը որ քաղաքակրթութեան տաճարն է աշխարհի աչքին։*

*Այս բոլոր օրինակները, այս բոլոր զոհողութիւնները պէտք է նպաստաւոր ըլլան հայկական գաղութին։ Այն սէրը, եռանդը, հաւատքը որ ունին անոնք Ֆրանսայի համար, բաւական են որպէսզի անոնք ինքնաբերաբար, առանց դժուարութեան, այլ, կին թէ երիտասարդ մտնեն Ֆրանսական հասարակութեան մէջ ։*

*Մենք վստահ ենք որ անոնք իրենց քաջութեամբ, աշխատանքով, յարատեւութեամբ պիտի նպաստեն Ֆրանսայի վերածնութեան, որովհետեւ վերջնապէս գտած պիտի ըլլան մայր մը որ զիրենք պիտի պաշտպանէ երկրի մը մէջ որ իրենց համար անհրաժեշտ դարձած է, իբրեւ մարդ ապրելու համար ։*

MARIUS BOGI

*երգ, Թատրոն, Հայկ. Դատ, պատմական, հայրենասիրական եւն.։ Հայկական Ժամին վարիչն է Տիկին Տիանա Սարգիս ։*

